Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 16 ՕԳՈՍՏՈՍ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԳ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ԱՐՏԱԴՐՈՂԱԲԱՐ ԵՎ ԼՐԻՎ ԿԱՐՈՂՈՒԹՅԱՄԲ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ

Կ. ՔՈՉԱՐՅԱՆ

Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության մինիստրի տեղակալ

*Կենսագործելով պարտիայի և կառավարության մշակած կոնկրետ միջոցառումները, սովետական ժողովուրդը պայքարում է երկրում բոլոր տեսակի մթերքների առատություն ստեղծելու և բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող մթերքների արտադրությամբ մոտակա տարիներին Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու և նրանից առաջ անցնելու համար։*

*Այդ խնդիրը հաջողությամբ լուծելու գործում կարևորագույն նշանակություն ունի այն, որ խելացիորեն և բարձր արտադրողականությամբ օգտագործվի այն ամբողջ տեխնիկան, որ ունի մեծ սոցիալիստական*



գյուղատնտեսությունը։ Սովետական պետությունը մեր մեքենա-տրակտորային կայանները հագեցրել է աշխարհի ամենաառաջավոր գյուղատնտեսական տեխնիկայով։ Մեքենաները գնալով ավելի լայն չափով են օգտագործվում կոլտնտեսային արտադրության ամենաբազմազան բնագավառներում, զգալիորեն հեշտացնելով ու բարելավելով գյուղատնտեսական արտադրության մեջ զբաղված մարդկանց աշխատանքի պայմանները։

Սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողները բարձր են գնահատում սովետական հիանալի մեքենաների դերն ու նշանակությունը։ Մեր մեխանիզատորները կոլտնտեսային դաշտերում ցույց են տալիս աշխատանքի բարձր արտադրողականության և տեխնիկայի լավագույն օգտագործման հիանալի օրինակներ։

Մեր երկրում աճել են տաղանդավոր մեխանիզատորների բազմաթիվ մշտական կադրեր, որոնք հիանալի ցուցանիշներ են ձեռք բերել աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։ Ամբողջ երկրում հռչակված են անվանի մեխանիզատորների՝ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ Պ. Անգելինայի, Ա. Գիտալովի և



շատ ուրիշների անունները։ Քիչ չէ աշխատանքի արտադրողականության բարձրացման և տեխնիկայի լավագույն օգտագործման գործում նշանակալի ցուցանիշներ ձեռք բերած անվանի մեխանիզատորների թիվը նաև մեր ռեսպուբլիկայի մեքենատրակտորային կայաններում։

Ոչ միայն ռեսպուբլիկայում, այլև ամբողջ Սովետական Միությունում հայտնի են Բասարգեչարի ՄՏ կայանի մեխանիզատոր, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ա. Գասպարյանի, Թալինի ՄՏ կայանի անվանի կոմբայնավար, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ա. Նիկոյանի, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ Պողոսյանի, Քերոբյանի և շատ ուրիշների անունները։

Առաջավոր մեխանիզատորների փորձը ցույց է տալիս, որ գյուղատնտեսական տեխնիկայի արտադրողականությունը բարձրացնելու և հիմնական գյուղատնտեսական աշխատանքները ժամանակին կատարելու ու բարձր բերք ստանալու համար անհրաժեշտ է ճշտությամբ կատարել գյուղատնտեսական աշխատանքների որակի ու ժամկետների նկատմամբ ներկայացվող ագրոտեխնիկական պահանջները, լրիվ չափով օգտագործել տվյալ գյուղատնտեսական տեխնի-

կայի հնարավորությունները, այսինքն՝ առավելագույն չափով օգտագործել տրակտորի կարողությունն ու քաշող ուժը, ինչպես նաև կցորդ գործիքները։ Բացի դրանից, գյուղատնտեսական տեխնիկայի արտադրողականության բարձրացման գործում չափազանց կարևոր գործոն է հանդիսանում օգտակար աշխատանքի տևողության ըստ ամենայնի ավելացումը, պարապ աշխատանքի և երթևեկության կրճատումը, ամեն տեսակ պարապուրդների վերացումը, ինչպես նաև բոլոր տեսակի աշխատանքներում երկհերթափոխության արմատավորումը։

Առաջավոր մեխանիզատորները տեխնիկայի հնարավորությունները լրիվին օգտագործելու համար հատուկ ուշադրություն են դարձնում նորոգումը բարձր որակով կատարելու և դաշտային աշխատանքների շրջանում մեքենաների նկատմամբ սիստեմատիկ տեխնիկական խնամք ապահովելու գործին։

Մեքենաների բարձր արտադրողականություն կարելի է հասնել միայն այն դեպքում, երբ մեքենաները մշտապես գտնվում են սարքին վիճակում։ Դրա համար պահանջվում է ճիշտ կազմակերպել մեքենաների խնամքը, տրակտորային բրիգադների



տեխնիկական սպասարկումը, ժամանակին և բարձր որակով նորոգել մեքենաները։

Ներկայումս մեքենա-տրակտորային կայաններն ունեն այն ամենը, ինչ անհրաժեշտ է այդ կարևորագույն պահանջներն իրագործելու համար։

Այժմ յուրաքանչյուր ՄՏ կայան ունի 2—3 ավտո շրջիկ արհեստանոց, նորոգման սարքավորում։ Խնդիրը միայն այն է, որ այդ ամենն օգտագործվի խելացիորեն, ինչպես հարկն է կազմակերպվի տեխնիկական սպասարկումը, դաշտային աշխատանքների հենց սկզբից թույլ չտրվի, որ որևէ մեքենա դուրս գա շարքից։ Հենց այդ էլ հնարավորություն կտա զգալիորեն բարձրացնելու մեքենա-տրակտորային պարկի արտադրողականությունը։

Տեխնիկական սպասարկումը լավագույն ձևով կազմակերպելու համար անհրաժեշտ է յուրաքանչյուր ՄՏ կայանում նորմատիվ ռեզերվի հաշվին ստեղծել ագրեգատների և հանգույցների փոխանակային ֆոնդ։ Դա հնարավորություն կտա շարքից դուրս եկած յուրաքանչյուր ագրեգատ փոխարինելու նոր կամ նորոգված ագրեգատով և դրանով իսկ խուսափելու նորոգման պատճառով առաջացող պարապուրդներից։ Մեքենաների

տեխնիկական խնամքի տեխնիկական սպասարկման և վերանորոգման հետ կապված բոլոր տեսակի աշխատանքները պետք է կատարել գյուղատնտեսական աշխատանքների ամբողջ ժամանակաշրջանի համար կազմված պլանին ու գրաֆիկին համապատասխան, այն հաշվով, որ մշտապես ապահովված լինի գյուղատնտեսական տեխնիկայի պահպանումը սարքին վիճակում։

Վերցնենք, որպես օրինակ, Բասարգեչարի ՄՏ կայանի բրիգադիր Ա. Գասպարյանի աշխատանքի փորձը։ Այդ տրակտորային բրիգադայում կան 4 ԴՏ—54 տրակտոր, ԿԴՊ—35 տրակտորներ, ԽՏԶ—7 տրակտորներ և բազմաթիվ գյուղատնտեսական մեքենաներ։ 1956 թվականին ընկ. Գասպարյանի բրիգադան տրակտորային աշխատանքների պլանը կատարեց 110,2 տոկոսով։ Աշխատանքը խելացի կազմակերպելու, նորոգումը բարձր որակով կատարելու և դաշտային աշխատանքների ընթացքում սիստեմատիկ տեխնիկական խնամք ապահովելու շնորհիվ՝ բրիգադան նորոգման և տեխնիկական սպասարկման համար բաց թողնված պետական միջոցներից տնտեսեց մոտ 5 հազար ռուբլի, ամբողջ աշխատանքի ընթացքում բրիգադայի բոլոր մեքենաները



էլ գտնվել են սարքին վիճակում։ Ներկայումս ընկ. Ա. Գասպարյանի բրիգադայի մեխանիզատորները զբաղված են իրենց սպասարկած կոլտնտեսություններում հարուստ բերքը հավաքելով։

Մարտունու ՄՏ կայանի տրակտորիստ Ս. Սուքիասյանը իրեն ամրացված ԴՏ—54 տրակտորը տեխնիկապես միշտ սարքին վիճակում պահելու շնորհիվ գրեթե երկու անգամ երկարաձգեց տրակտորի միջնորոգման ժամկետը և զգալիորեն տնտեսեց նորոգման համար բաց թողնված միջոցները։

Այն կապակցությամբ, որ մեքենա-տրակտորային կայաններում և սովխոզներում բազմաթիվ ու բարդ նոր տեխնիկա է ստացվել, անհրաժեշտ է մեծ չափով բարձրացնել մեխանիզատորական կադրերի տեխնիկական մակարդակը և բարելավել մեքենա-տրակտորային պարկի աշխատանքի կազմակերպման-տեխնիկական ղեկավարությունը։

Չի կարելի աշխատանքում հասնել տեխնիկա-տնտեսական և արտադրական բարձր ցուցանիշների, առանց գիտենալու նորագույն տեխնիկան։ Այդ պատճառով էլ ՄՏ կայանների և սովխոզների ղեկավարներն ամենից առաջ պետք է հոգ տանեն մեխանի-

պատորների որակավորումը բարձրացնելու, նրանց վարպետությունը կատարելագործելու, տրակտորային բրիգադաներում և մյուս տեղամասերում կադրերն ամրացնելու մասին։ Փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր այդ գործին լուրջ չեն վերաբերվում, որտեղ նոր տեխնիկան ամրացնում են նորաուս և սակավափորձ մեխանիզատորներին, տեխնիկան արտադրողաբար չի օգտագործվում, ավելի հաճախակի են դառնում մեքենաների մասերի ջարդման և պարապուրդների դեպքերը, որը վերջին հաշվով մեծ վնաս է հասցնում ընդհանուր գործին։

Որպեսզի ավելի պարզ լինի, բերենք մի քանի փաստեր Ջրվեժի ՄՏ կայանի աշխատանքի փորձից։ Այստեղ բերքահավաքի սկզբին ինքնագնաց կոմբայններից մեկի կոմբայնավար էին նշանակել դասընթացները նոր ավարտած և դեռ անհրաժեշտ փորձ չունեցող Ս. Քեթեբյանին։ Երիտասարդ մեխանիզատորը գործին չտիրապետելու հետևանքով Գառնի գյուղի կոլտնտեսությունում 15 օրում հավաքեց միայն 7 հեկտարի բերք, այսինքն՝ օրական կես հեկտարից էլ պակաս, այն ժամանակ, երբ այդ կոմբայնի օրական արտադրական նորման 8 հեկտար է։

Կոմբայնավար Գ. Նավասարդյանը Ջրվեժ



գյուղի կոլտնտեսության դաշտում «Ստալինեց» 6 կոմբայնով 6 օրում հավաքեց ընդամենը 10 հեկտարի բերք։ Այդպիսի փաստեր կան նաև Վեդու, Աղինի և մի քանի այլ ՄՏ կայաններում։

Այդ պատճառով էլ անհրաժեշտ է բոլոր ՄՏ կայաններում կազմակերպել տեխնիկական ուսուցում։ Բացի սեմինար և խմբակային պարապմունքներից, լայնորեն կիրառել նաև անհատական ուսուցման մեթոդը, հին ու փորձառու մեխանիզատորներին կցելով նոր աշխատողներին։ Անհրաժեշտ է նաև լայնորեն մասսայականացնել այն առաջավոր ՄՏ կայանների փորձը, որոնք մեխանիզատորներին սովորեցնում են տիրապետելու մի քանի մասնագիտությունների։

Այդ ամենը կօգնի մեխանիզատորներին՝ բարձրացնելու իրենց որակավորումը և ավելի լավ օգտագործելու այն մեքենաները, որոնց վրա աշխատում են իրենք։

Այժմ, երբ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ծավալվել է հացահատիկի բերքահավաքը, անհրաժեշտ է բարձր արտադրողականությամբ օգտագործել բերքահավաքի ամբողջ տեխնիկան՝ հացահատիկի բերքահավաքը արագ և առանց կորուստների կատարելու համար։

Կոմբայնների աշխատանքի արտադրողականության ավելացման աղբյուրը, կոմբայնը մշտապես սարքին վիճակում պահելու հետ մեկտեղ, նաև աշխատանքային ժամերի ճիշտ օգտագործումն է։

Առաջավոր ՄՏ կայանների հաջողությունները բացատրվում են նրանով, որ այստեղ լավ է կազմակերպված աշխատանքը տրակտորային և կոլտնտեսային բրիգադներում։

Մեքենաները առավել արտադրողականությամբ օգտագործելու համար ՄՏ կայանների ղեկավարները պետք է հասնեն մեխանիզատորների և կոլտնտեսականների համաձայնեցված աշխատանքի, սիստեմատիկ վերահսկողություն կազմակերպեն մեխանիզատորների աշխատանքի նկատմամբ, գործնական օգնություն ցույց տան տրակտորային բրիգադներին՝ պլանները ժամանակին կատարելու գործում։

Լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը՝ գյուղատնտեսական տեխնիկան օգտագործենք ավելի բարձր արտադրողականությամբ, Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը նշանավորենք աշխատանքային նոր հաջողություններով։

---

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ՔԱՌԱՍՈՒՆ ՏԱՐՈՒՄ

Ս. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

Շուտով կլրանա քառասուն տարին այն օրվանից, երբ մեր երկրի բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիության հետ միասին, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, տապալեց կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը, ճանապարհ հարթեց մեր երկրի արտադրողական ուժերի անկաշկանդ զարգացման և սոցիալիստական հասարակարգի կառուցման համար։

Չնայած երկրի բնակչության մեծ թվին, ընդարձակ տարածություններին ու ընդերքի անսպառ հարստություններին, ցարական Ռուսաստանը արդյունաբերական տեսակետից աշխարհի ամենահետամնաց երկրներից մեկն էր։ Ինքնակալական ռեժիմը, կալվածատիրությունը կաշկանդել էին երկրի արտադրողական ուժերի զարգացումը։

Ռուսաստանը չուներ ավտոմոբիլային, տրակտորային, ավիացիոն արդյունաբերություն, քիմիական և դազգահաշինական արդյունաբերություն, մետալուրգիա։ Էլեկտրաէներգիայի արտադրությամբ նա կանգնած էր աշխարհում ամենահետամնաց տեղերից մեկը։ Ռուսաստանը ստիպված էր ամենապարզ գործիքներն ու մեքենաները ներմուծել դրսից։

Երկրի դարավոր հետամնացությունը լիկվիդացնելու, սոցիալիստական հասարակարգ կառուցելու համար Կոմունիստական պարտիան մեծ Լենինի ղեկավարությամբ մշակեց և իրականացրեց սոցիալիստական ժամանակակից ինդուստրիա ստեղծելու հոյակապ պլան։ Պատմությունը չի տեսել տնտեսական շինարարության, մասնավորապես արդյունաբերության զարգացման այն մասշտաբներն ու տեմպերը, որ իրականացվեց և իրականացվում է մեր երկրում։

Երկրի էկոնոմիկայի բոլոր ճյուղերի զարգացման, այդ թվում նաև գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման հիմքը ծանր ինդուստրիայի՝ մետալուրգիայի, մեքենաշինության, վառելիքի և քիմիական արդյունաբերության զարգացումն է։



Կենսագործելով ծանր ինդուստրիայի վճռական ճյուղերի առաջնահերթ զարգացման՝ պարտիայի գլխավոր գիծը, մեր երկիրը կարճ ժամանակաշրջանում վերածվեց ինդուստրիալ հզոր տերության։

Արդյունաբերության զարգացման մակարդակով մեր երկիրը հետ թողնելով կապիտալիստական այնպիսի խոշոր երկրների, ինչպիսիք են Անգլիան, Գերմանիան, Ֆրանսիան, գրավեց աշխարհում 2-րդ տեղը։

Ահա թվեր, որոնք բնորոշում են մեր ծանր ինդուստրիայի զարգացման չտեսնված տեմպը և ծավալը։ 1913 թվականին Ռուսաստանը արտադրում էր ընդամենը 4,2 միլիոն տոննա չուգուն և նույնքան էլ պողպատ, իսկ 1956 թվականին մեր երկրում ձուլվեց 35,8 միլիոն տոննա չուգուն, այսինքն 8,5 անգամ ավելի և 48,6 միլիոն տոննա պողպատ՝ 11 անգամ ավելի։

Արդյունաբերության, այդ թվում նաև սև մետալուրգիայի զարգացումը ամբողջովին կախված է վառելիքից։ Առանց քարածխի, նավթի, էլեկտրաէներգիայի, անհնարին է արդյունաբերության զարգացումը։ Սովետական իշխանությունը, մեր հերոսական բանվոր դասակարգը հաջողությամբ լուծեցին վառելիքի պրոբլեմը։ Եթե 1913 թվականին

Ռուսաստանը արդյունահանում էր 29,1 միլիոն տոննա քարածուխ, ապա 1940 թվականին քարածխի հանույթը հասավ 165,8 միլիոն տոննայի իսկ 1956 թվականին՝ 429,2 միլիոն տոննայի, այսինքն 15 անգամ ավելի։ Միայն Ուկրաինական ՍՍՌ-ում ներկայումս արդյունահանվում է 2,3 անգամ ավելի քարածուխ, քան ամբողջ Ֆրանսիայում։

Մեր երկրում բուռն թափով զարգացավ նավթարդյունաբերությունը։ Նավթի հանույթը 1913 թվականին՝ 9,2 միլիոն տոննայից 1956 թվականին հասավ 83,8 միլիոն տոննայի, իսկ 1957 թվականի պլանով նախատեսված է 97 միլիոն տոննա։ Ստեղծվել է նավթարդյունաբերության բազմաթիվ նոր շրջաններ, իսկ Բաշկիրիան սովետական իշխանության տարիներին հասավ և անցավ մեր երկրի հնագույն նավթային շրջանին՝ Բաքվին։ Միայն 1956 թվականին Բաշկիրիայում հայտնաբերվեց նավթային 6 նոր հանքավայր։

«Կոմունիզմը,— ասում էր Վլադիմիր Իլյիչը,— դա Սովետական իշխանությունն է գումարած ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը»։ Մինչդեռ մեր երկիրը էլեկտրաէներգիա-



յի արտադրության տեսակետից աշխարհում կանգնած էր 15-րդ տեղում։

Մեծ Լենինի անմիջական ղեկավարությամբ, սովետական իշխանության տարիներին և ապա հաջողությամբ իրականացվեց երկրի էլեկտրիֆիկացման առաջին՝ ԳՈԷԼՌՕ-ի հռչակավոր պլանը, որը պայմաններ ստեղծեց էլեկտրաարդյունաբերության հետագա էլ ավելի զարգացման համար։ Էլեկտրաէներգիայի արտադրությամբ Սովետական Միությունը աշխարհում 15-րդ տեղից բարձրացավ 2-րդ տեղը։ 1913 թվականին արտադրված 1,9 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի դիմաց, 1956 թվականին մեր երկրում արտադրվեց 192 միլիարդ կիլովատ-ժամ։ Թե ինչպիսին է էլեկտրակայանների շինարարության ծավալը մեր երկրում, բավական է նշել, որ 1956 թվականին միայն էլեկտրակայանների մինիստրության գծով գործարկվել է մոտ 4 միլիոն կիլովատ հզորության էլեկտրակայաններ։ Իսկ դա հավասար է 65 վոլխովյան էլեկտրակայանի։ Սովետական Միությունը գերազանցեց էլեկտրաարդյունաբերության համաշխարհային տեխնիկայի բոլոր նվաճումները։ Արդեն գործում է աշխարհի ամենահզոր՝ Կույբիշևի հիդրոէլեկտրակայանը,

որը այս տարի հասնելու է իր լրիվ կարողության՝ 2 միլիոն 100 հազար կիլովատի, կառուցվում են ավելի հզորները։ 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, էլեկտրաէներգիայի արտադրությունը աճելու է մոտ 17 միլիարդ կիլովատ-ժամով։

Ժողովրդական տնտեսության տեխնիկական պրոգրեսի հիմքը մեքենաշինությունն է։ Հնգամյակների տարիներին մեր երկրում ստեղծվեց և բուռն տեմպով զարգացավ հզոր մեքենաշինություն, ստեղծվեցին մեքենաշինության այնպիսի ճյուղեր, որ անհայտ էին ցարական Ռուսաստանին, ինչպես, օրինակ, ավտոմոբիլային, տրակտորային, ավիացիոն, հաստոցաշինական, էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը։

1956 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, մեր մեքենաշինության և մետաղամշակության արտադրանքը ավելացել է 181 անգամ։ Սովետական Միությունը մեքենաներ և մեխանիզմներ ներմուծող երկրից վերածվեց այդպիսիք արտահանող երկրի։ Բնորոշ է, որ 1928 թվականին մեր ավտոմոբիլային արդյունաբերությունը երկրին տվեց ընդամենը 800 ավտոմեքենա, 1956 թվականին՝ 465.000 ավտոմեքենա, իսկ այս տարվա





առաջին կիսամյակում՝ 244 հազար ավտոմեքենա։

Ընթնալով ժողովրդական տնտեսության տեխնիկական պրոգրեսի ուղիով, սովետական մեքենաշինության բուռն զարգացման շնորհիվ այժմ լայն մասշտաբներով մեքենայացվում և ավտոմատացվում են արտադրության պրոցեսները, կատարելագործվում արտադրության մեթոդները։ Այժմ մեր քարածխի հանքերում գործում են ածխային հզոր կոմբայններ, հզոր էլեկտրաքարշներ, ավտոմատիկ կոնվեյերներ, նավթարդյունաբերության մեջ մեքենայացվել են հորատման պրոցեսները, ավտոմոբիլային գործարաններում արմատավորվում են ավտոմատիկական գծեր, ինդուստրացվել է շինարարությունը։

Իրականացնելով ծանր ինդուստրիայի զարգացման հոյակապ պլանները, Կոմունիստական պարտիան և Սովետական իշխանությունը ստեղծեցին հզոր բազա թեթև արդյունաբերության արագ և անշեղ զարգացման համար։ Մեր երկրում ստեղծվեց թեթև և սննդի հզոր արդյունաբերություն՝ հագեցված ժամանակակից տեխնիկայով։ Թեթև ինդուստրիայի զարգացման տեմպերը, նրա արտադրանքի աճման մասշտաբները արտացոլված են հետևյալ պերճախոս թվերի մեջ։ 1913

թվականի համեմատությամբ, 1956 թվականին մեր երկրում բամբակե գործվածքների արտադրությունը աճել է 2,1 անգամ, բրդյա գործվածքների արտադրությունը 2,6 անգամ, մետաքսյա գործվածքներինը՝ 18 անգամ, կաշվե կոշիկներինը՝ 4,8 անգամ։ Էլ ավելի մեծ են սննդի արդյունաբերության արտադրանքի աճման տեմպերը։ Նույն թվականների համեմատությամբ, մեր երկրում արտադրվել է 7,5 անգամ ավելի կենդանական յուղ և կաթնամթերք, 3,2 անգամ ավելի բուսական յուղ, 38 անգամ ավելի պահածոներ, 3,2 անգամ ավելի շաքար։

Մեր երկրում ստեղծվեց ժողովրդի կուլտուր-կենցաղային պահանջները բավարարող այնպիսի արդյունաբերություն, որը հարաճուն մասշտաբներով արտադրում է կուլտուր-կենցաղային բազմապիսի առարկաներ։ Բավական է ասել, որ այդ արդյունաբերությունը 1940 թվականի համեմատությամբ, 1956 թվականին արտադրել է 26 անգամ ավելի ռադիոընդունիչներ և հեռուստատեսներ, 8 անգամ ավելի ժամացույցներ, 65 անգամ ավելի կենցաղային սառնարաններ, 11 անգամ ավելի կարի մեքենաներ, 12 անգամ ավելի հեծանիվներ, 3,3



անգամ ավելի ֆոտոապարատներ և 44 անգամ ավելի մոտոցիկլետներ։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ սովետական իշխանության տարիներին էլ ավելի բուռն թափով զարգացավ արդյունաբերությունը ազգային ռեսպուբլիկաներում։ Նախկինում այդ հետամնաց ազգային ծայրամասերը վերածվել են ծաղկուն ռեսպուբլիկաների։ Ահա մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման մասշտաբներն ու տեմպերը պատկերող մի քանի տվյալներ։

Նախասովետական Հայաստանի արդյունաբերությունը ներկայացնում էր երկու պղնձի հանքերով և մի քանի արհեստանոցներով։ Այսօր մեր հզոր լեռնա-հանքային և գունավոր մետալուրգիայի արդյունաբերությունը երկրին տալիս է ալյումին, մոլիբդենի, ցինկի, կապարի կոնցենտրատներ և այլ հազվագյուտ մետաղներ։ Ռեսպուբլիկայում ստեղծված են արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ մեքենաշինությունը, գործիքաշինությունը, քիմիական և էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը։ Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը երկրին տալիս է մետաղահա

դազգահներ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, կոմպրեսորներ, շարժական էլեկտրակայաններ, ժամացույցներ, էլեկտրալամպեր, ավտոդողեր, որոնց մասին անցյալում երազել անգամ չէր կարելի։ Այն ժամանակ, երբ Սովետական Միության արդյունաբերության արտադրանքը ամբողջությամբ վերցրած, 1956 թվականին, 1913 թվականի համեմատությամբ աճել է 30 անգամ, Սովետական Հայաստանում աճել է 45 անգամ։ Մեր ռեսպուբլիկան այժմ ունի 644 արդյունաբերական խոշոր ձեռնարկություն (չհաշված մանրերը), որոնք արտադրում են ավելի քան 6 ու կես միլիարդ ռուբլու համախառն արտադրանք։

Այսպիսիք են արդյունաբերության զարգացման հաջողությունները նաև միութենական բոլոր ռեսպուբլիկաներում։

Մեր մեծ Հայրենիքում այժմ գործում են 200.000 արդյունաբերական ձեռնարկություն և 100.000 կառույց։ Բայց էլ ավելի բնորոշ ու պերճախոս են տեխնիկական պրոգրեսի փաստերը։

Երեք տարի առաջ մեր երկրում սկսեց գործել աշխարհում առաջին ատոմային էլեկտրակայանը, 1956 թվականին շարք մտավ աշխարհում ամենահզոր Կույբիշևի



հիդրոէլեկտրակայանը, կառուցվում են համաշխարհային նոր գիգանտներ՝ Ստալինգրադի և Բրատսկայայի հիդրոէլեկտրակայաններ, միջազգային և ներքին օդային գծերում շահագործման է հանձնված իր տեսակի մեջ աշխարհում ամենալավագույն ռեակտիվ մարդատար ինքնաթիռը «Տու—104»-ը, ակսվել է աշխարհում առաջին ատոմային սառցահատի կառուցումը, արդեն գործում է աշխարհում ամենահզոր ատոմային մեքենան՝ սինխրոֆազոտրոնը, ծավալվում է ատոմային նոր հզոր էլեկտրակայանի շինարարությունը, որի առաջին հերթի կարողությունն է 420 հազար կիլովատտ։ Դրանք ոչ միայն սովետական գիտության և տեխնիկայի նվաճած, համաշխարհային բարձր մակարդակի վկայություններն են, այլև պարզ ցույց են տալիս սոցիալիստական ինդուստրիայի հզորությունը, նրա զարգացման բացառիկ բարձր մակարդակը, որ ձեռք է բերվել մեր բանվոր դասակարգի, սովետական մարդկանց հերոսական աշխատանքով, երկրի ինդուստրացման վերաբերյալ կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության իմաստուն քաղաքականության անշեղ կենսագործման շնորհիվ։

—

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ԿԱՊԵՐԸ

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

*Սովետական Միությունը ղեկավարվելով պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքներով, անում է հնարավոր ամեն բան, որպեսզի նպաստի բոլոր երկրների հետ բազմակողմանի կուլտուրական կապերի զարգացմանը, անկախ այդ երկրների սոցիալ-քաղաքական կարգից։*

*Մեր երկրում ստեղծված են կազմակերպչական և նյութական բոլոր պայմանները արտասահմանյան երկրների ժողովուրդների հետ կուլտուրական փոխանակության համար։*

*Մեզ մոտ գոյություն ունի օտարերկրյա գրականության հրատարակչություն, որը Սովետական իշխանության տարիներին հրատարակել է արտասահմանյան ավելի քան 1.700 հեղինակների ստեղծագործություններ,*



*370 միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով։ Երկար տարիներ է, ինչ լույս է տեսնում «Ինոստրաննայա լիտերատուրա» հատուկ ամսագիրը։ «Սովետսկի սոյուզ», «Նովոյե վրեմյա» և մի շարք այլ ամսագրեր թարգմանվում են շատ օտար լեզուներով և ուղարկվում աշխարհի համարյա բոլոր երկրները։ Արտասահմանյան ընթերցողների համար Սովետական Միությունում լույս են տեսնում հատուկ ամսագրեր և թերթեր։ Նմանապես սովետական ընթերցողների համար թարգմանվում և հրատարակվում են զանազան երկրներում, և հատկապես սոցիալիստական երկրներում լույս տեսնող թերթեր և ամսագրեր։ Արդեն երկրորդ տարին է, ինչ Սովետա-Չինական բարեկամության Ընկերության նախաձեռնությամբ ռուսերեն և չինարեն լույս է տեսնում «Դրուժբա» թերթը։ Օտարերկրյա գրականության Մոսկվայի պետական գրադարանը ունի ավելի քան մեկ և կես միլիոն գիրք 62 օտար լեզուներով։*

*Վ. Ի. Լենինի անվան պետական գրադարանը և մեր երկրի մյուս շատ գրադարաններ գրականության լայն փոխանակություն են կատարում արտասահմանյան 84 երկրների հետ։ Սովետական գրողների, կոմպոզիտորների, նկարիչների և ճարտարապետների*

միություններում գոյություն ունեն հատուկ հանձնաժողովներ, որոնք կապ են պահպանում արտասահմանյան պրոգրեսիվ գրողների, կոմպոզիտորների, նկարիչների և ճարտարապետների հետ։

Կուլտուրական փոխանակության զարգացման գործում բացառիկ կարևոր դեր է խաղում արտասահմանի հետ կուլտուրական կապի Համամիութենական Ընկերությունը (ՎՕԿՍ), որը երկար տարիների ընթացքում սերտ կապեր է պահպանում Սովետական Միության հետ բարեկամության և կուլտուրական կապերի արտասահմանյան 48 ընկերությունների հետ։ Միութենական շատ ռեսպուբլիկաներում կազմակերպված են արտասահմանի հետ կուլտուրական կապի ռեսպուբլիկական ընկերություններ։ Օրինակ, Հայկական ՍՍՌ-ում գործում է Արտասահմանի հետ կուլտուրական կապի ընկերություն (ԱՕԿՍ), որը ակտիվորապես կուլտուրական փոխանակություն է կատարում արտասահմանյան առաջադեմ կազմակերպությունների և աշխատավոր հայերի հետ, որոնք բնակվում են աշխարհի զանազան երկրներում։

ԱՕԿՍ-ը արտասահմանի հայ ընթերցողների համար լույս է ընծայում «Սովետական



Հայաստան» ամսագիրը, որն իր ընթերցողներին ծանոթացնում է Սովետական իշխանության տարիներին Հայաստանի ձեռք բերած նվաճումների հետ, սովետական մարդկանց կյանքի և կենցաղի հետ։

Կուլտուրայի բնագավառում միջազգային համագործակցության զարգացումը հանդիսանում է Սովետական Միության արտաքին քաղաքականության անքակտելի մասը և անհրաժեշտ պայմանը՝ ՍՍՌՄ ժողովուրդների ազգային կուլտուրայի հարստացման գործում։ Սովետական Միությունում ամենազանազան կերպով իրագործվում է համաշխարհային կուլտուրայի նվաճումների պրոպագանդան։ Սովետական մարդիկ մեծ հարգանքով են վերաբերվում արտասահմանյան ժողովուրդների կուլտուրական նվաճումներին։ Մեր երկրի ժողովուրդները միշտ նշում են տարբեր երկրների ու էպոխաների ականավոր գործիչների հիշարժան տարեթվերը։ Վերջին տարիներին սովետական ժողովուրդը հանդիսավոր կերպով նշեց Լեոնարդո Դա Վինչիի, Ավիցեննայի, Վոլտերի, Ռուսսոյի և մյուսների հոբելյանական տարեթվերը։ Անցյալ և նախանցյալ տարիներում նշվեցին Շիլլերի մահվան 150-ամյակը, Միցկևիչի մահվան 100-ամյակը, Մոնտեսկ-

յոլի մահվան 200-ամյակը, Անդերսենի ծննդյան 150-ամյակը, Սերվանտեսի «Դոն-Կիխոտ» վեպի լույս ընծայման 350-ամյակը, Ռեմբրանդտի ծննդյան 350-ամյակը և այլն:

Լայն կիրառում է գտնում ժողովուրդների միջև կուլտուրական կապի այնպիսի մի ձև, ինչպես գրականության և արվեստի նվաճումների ցուցադրումը: Վերջին տարիներս մեր երկրում կազմակերպվել են 19-րդ դարի ֆրանսիական գրքի և ֆրանսիական գեղարվեստի, անգլիական գրքի և անգլիական գեղարվեստի, 19—20-րդ դարերի բելգիական արվեստի ցուցահանդեսներ, հոլանդական հայտնի նկարիչ Ռեմբրանդտի և մյուսների նկարների ցուցահանդես:

Տրադիցիա է դարձել սովետական ֆիլմերի ֆեստիվալների անցկացումը արտասահմանյան մի շարք երկրներում և արտասահմանյան ֆիլմերի ֆեստիվալների անցկացումը ՍՍՌՄ-ում: Այժմ սովետական ֆիլմեր են դիտում աշխարհի 59 երկրներում: Մեր երկրի կինոթատրոնների էկրանների վրա ցուցադրվում են Չինաստանի, Անգլիայի, Գերմանիայի, Հունգարիայի, Մեքսիկայի, Ֆրանսիայի, Իտալիայի, Հնդկաստանի, Եգիպտոսի, Ֆինլանդիայի և մյուս երկրների արտադրած ֆիլմերը:



Լայն կիրառում է գտնում նաև կուլտուրայի գործիչների պատվիրակությունների փոխանակությունը: Վերջին տարիներում սովետական բեմի վրա հանդես են եկել Չինաստանի, Շվեդիայի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Հարավսլավիայի, Անգլիայի, Նորվեգիայի, Լեհաստանի, Մեքսիկայի և մյուս երկրների թատերական և երաժշտական կոլեկտիվներն ու մենակատարները: Իր հերթին արտասահմանյան երկրներում ելույթներ են ունենում սովետական թատերական և երաժշտական կուլտուրայի գործիչները:

Սովետական բալետային խումբը և մենակատարները մեծ հաջողությամբ ելույթներ ունեցան Ֆրանսիայում, Լեհաստանում, ԳԴՌ-ում և Անգլիայում: Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի 11 երկրներում իր վարպետությունը ցուցադրեց «Բերյոզկա» պարային անսամբլը: ԱՄՆ-ում և Անգլիայում մեծ հաջողությամբ ելույթներ ունեցավ սովետական ջութակահար Դավիթ Օյստրախը, անգլիական և հունական հասարակայնությունը ծանոթացավ Զարուհի Դոլուխանովայի կատարողական բարձր արվեստին: Այժմ Լատինական Ամերիկայի երկրներում հաջող ելույթներ է ունենում սովետական տաղանդավոր կոմպոզիտոր Արամ Խաչատրյանը:

Բացառիկ կարևոր հաջողություններ ունեցան սովետական կատարողները, որոնք մասնակցեցին միջազգային կոնկուրսներում և փեստիվալներում։ Հետպատերազմյան տարիներին նրանք մասնակցել են կատարողների միջազգային 16 կոնկուրսների և գրավել են 21 առաջին և 18 երկրորդ տեղեր։

Վերջին ժամանակներս երկրագնդի բոլոր ժողովուրդների երիտասարդ սերնդի երազանքներն ու մտածմունքները ուղղված են դեպի Մոսկվա, որտեղ տեղի էր ունենում երիտասարդների միջազգային բոլոր հանդիպումներից ամենալայնն ու ամենաներկայացուցչականը՝ երիտասարդության և ուսանողների համաշխարհային վեցերորդ փեստիվալը, որին մասնակցում էին աշխարհի 131 երկրների 34 հազար պատանիներ ու աղջիկներ։

Ամեն տարի է՛լ ավելի է ընդլայնվում սպորտային պատվիրակությունների փոխանակությունը ՍՍՌՄ-ի և արտասահմանյան երկրների միջև։ Այժմ ՍՍՌՄ-ի սպորտային կազմակերպությունները կապեր են պահպանում աշխարհի 50 երկրների սպորտսմենների հետ։ Պաշտոնական մրցություններից բացի, սովետական սպորտսմենները ամեն տարի անց են կացնում ընկերական բազմաթիվ



հանդիպումներ արտասահմանյան սպորտսմենների հետ։

Գնալով է՛լ ավելի է ընդլայնվում ՍՍՌՄ-ի և արտասահմանյան շատ երկրների միջև տուրիստական փոխանակությունը։ Համամիութենական բաժնետիրական «Ինտուրիստ» ընկերությունը պայմանագրային հարաբերություններ է հաստատել աշխարհի 38 պետությունների 69 տուրիստական ֆիրմաների և կազմակերպությունների հետ։ Միայն 1956 թվականին «Ինտուրիստի» միջոցով Սովետական Միություն է այցելել մոտ 30 հազար օտարերկրացի տուրիստ, 49 երկրներից։

Իր հերթին սովետական քաղաքացիներն էլ տուրիստական ճանապարհորդություններ են կատարում դեպի արտասահմանյան երկրները։ 1956 թվականին արտասահման է այցելել ավելի քան 17 հազար սովետական տուրիստ։ Արդեն երկրորդ տարին է ինչ սովետական տուրիստները ծովային ճանապարհորդություն են կատարում Եվրոպայի շուրջը։

ՍՍՌՄ-ի միջազգային կուլտուրական կապերի ընդլայնումն ու ամրապնդումը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի խաղաղասիրական արտաքին քաղաքականության արդյունքն է։

# ԱԳԻՏԲՐԻԳԱԴԱՆ ԱՆԱՍՆԱՊԱՀՆԵՐԻ ՄՈՏ

Ն. ՍԱՀԱԿՅԱՆ

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կողմից առաջադրված խնդիրը՝ բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, մսի և յուղի արտադրությամբ մոտակա տարիներին Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու մասին, ջերմորեն ընդունեցին Արտաշատի շրջանի կոլտնտեսային աշխատավորները։ Այդ նպատակն իրագործելու համար շրջանի գյուղատնտեսության աշխատողներն ստանձնել են սոցիալիստական բարձր պարտավորություններ։

Այժմ շրջանի անասնապահները քրտնաջան աշխատանք են կատարում, որպեսզի է՛լ ավելի բարձրացնեն անասունների մթերատվությունը, ոչխարների բրդատվությունը և պատվով կատարեն ստանձնած պարտավորությունները։

Անասնապահների մեջ պարտիայի ու կառավարության որոշումները սիստեմատիկա-



բար պարզաբանելու նպատակով պարտշրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը կազմակերպել է ագիտ-բրիգադա, որն արդեն երկու անգամ եղել է յայլաղներում անասնապահների մոտ։ Ագիտ-բրիգադայում ընդգրկվել են 8 հոգի։

Առաջին անգամ ագիտ-բրիգադան անասնապահների մոտ եղավ հունիսի 2—12-ը և մասսայականացրեց ՌՍՖՍՌ Հյուսիս-Արևմուտքի մարզերի և ավտոնոմ ռեսպուբլիկաների գյուղատնտեսական աշխատողների՝ Լենինգրադ քաղաքում կայացած խորհրդակցությունում ընկ. Ն. Ս. Խրուշչովի արտասանած ճառը։ Իսկ այնուհետև անասնապահների հետ զրույցներ անցկացվեցին՝ «Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը դիմավորենք անասնաբուծության բնագավառում ձեռք բերած բարձր ցուցանիշներով», «ՍՍՌՄ ժողովուրդների ձեռք բերած նվաճումները 40 տարում», «Սոցիալիստական անասնաբուծության զարգացման բնագավառում անասնապահների առջև դրված խնդիրները» և այլ թեմաների շուրջ։

Մեկ շաբաթից ավելի մնալով յայլաղներում, ագիտ-բրիգադայի անդամները մանրամասնորեն ծանոթացան անասնապահների աշխատանքին։ Նրանք լավ աշխատանքի

համար խրախուսեցին շատ առաջավոր աշխատողների, ինչպես, օրինակ, Մրգանուշ գյուղի կոլտնտեսության կովաբուծական ֆերմայի կթվոր-անասնապահներ Ոսկեհատ Մնացականյանին, Լուսիկ Ումրիկյանին, որոնք սիստեմատիկաբար գերակատարում են կովերի կաթնատվության պլանը և գերազանց խնամում հորթերին, Վարդաշեն գյուղի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի հովիվ Ֆերտ Շամոյանին, որն իր խնամքին հանձնված 260 ոչխարից ստացել ու պահպանում է 275 գառ և ուրիշներին։

Ագիտ-բրիգադայի անդամները ուսումնասիրեցին նաև Նորաշեն գյուղի կոլտնտեսության անասնապահական ֆերմայի աշխատողների լավագույն աշխատանքի փորձը։ Ֆերմայի վարիչ Զ. Վարդանյանը պատմեց, թե ինչպես կովերի կաթնատվությունը արոտային պայմաններում լավ խնամքի շնորհիվ, բարձրացել է 10—15 տոկոսով։ Ոչխարների առաջին խուզից կոլտնտեսությունը կատարել է բրդի հանձնման տարեկան պլանը։ Ոչխարաբույծները պայքարում են մինչև տարվա վերջը յուրաքանչյուր ոչխարից ստանալ 3 կիլոգրամ բուրդ։

Ագիտ-բրիգադայի անդամները բազմակողմանիորեն ուսումնասիրելով և ընդհան-



րացնելով առաջավոր անասնապահների հարուստ փորձը, այն սկսեցին մասսայականացնել կոլտնտեսությունների մյուս ֆերմաների աշխատողների մեջ։ Բուրաստանի, Մասիսի, Ծաղկաշենի, Նորաշենի, Վ. Արտաշատի անասնապահները խոստացան ընդօրինակել առաջավորներին, ավելի լավ խնամել անասուններին և անընդհատ բարձրացնել նրանց մթերատվությունը։

Բացի զեկուցումներից ու զրույցներից, ագիտ-բրիգադայի անդամները անասնապահների համար կազմակերպել են նաև կինոցուցադրումներ։ Ցուցադրվել է «Խերսոնի մարզի Վիսոկոպոլսկի շրջանի Լենինի անվան կոլտնտեսության անասնապահները» կինոժուռնալը և «Բոռ» կինոնկարը։

Երկրորդ անգամ ագիտ-բրիգադան յայլաղում եղավ հուլիսի 12—22-ը։ Այս անգամ ագիտ-բրիգադան հետաքրքրվեց, թե ի՞նչ արդյունքներ է տվել առաջին այցելության ժամանակ առաջավորների փորձի մասսայականացումը։ Այնուհետև բրիգադան զբաղվեց սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման հարցով։ Կոլտնտեսականները ոգևորված մեկը մյուսի հետևից պատմում էին, թե ով, ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունը։

Կոլտնտեսականները պատմեցին, թե ինչպես Մասիս գյուղի անասնապահական ֆերմայում մինչև հուլիսի 15-ը յուրաքանչյուր կովից ստացվել է 1.050 լիտր կաթ։ Անցյալ տարվա նույն ժամանակվա 890 լիտրի փոխարեն։ Առանձին կթվորուհիներ՝ Մարգարիտ Դավթյանը և Պայծառ Բաղիկյանը իրենց խնամքին հանձնված ամեն մի կովից մինչև այժմ ստացել են 1.124 լիտր կաթ։ Կովերի կաթնատվության բարձրացմանը մեծապես նպաստում է այն հանգամանքը, որ անասնապահներ Ս. Բաղդասարյանը և Մ. Թամոյանը կազմակերպում են կովերի գիշերային արոտ, իսկ անձրևոտ և ցուրտ օրերին կովերին կերակրում են խտացրած կերերով։

Ի պատիվ Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի անվանի կթվորուհին պայքարում է մինչև տարվա վերջը ամեն մի կովից ստանալ 2.000 լիտր կաթ։

Երկրորդ անգամ ագիտ-բրիգադան բացի առաջավորների փորձը մասսայականացնելուց, ունկնդիրների համար կազմակերպեց մի շարք զրույցներ, զեկուցումներ, թերթերի բարձրաձայն ընթերցանություն, ցուցադրեց «Ն. Ս. Խրուշչովը ու Ն. Ա. Բուլգանինը Բիր-



մայում» կինոժուռնալը և «Անհետ կորածը» կինոնկարը։

Այնուհետև ագիտ-բրիգադայի անդամները անասնապահների շրջանում հանգամանորեն պարզաբանեցին ՍՄԿԿ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումը, որը գոհունակությամբ ընդունվեց բոլորի կողմից։

ՀԿԿ շրջկոմի ագիտ-բրիգադան այժմ զրույցներ ու զեկուցումներ է կազմակերպում շրջանի մյուս կոլտնտեսություններում դաշտում աշխատող կոլտնտեսականների համար։

---

# ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԸ

(Թվեր և փաստեր)

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիայի 40-ամյա պանծալի տարեդարձը աշխատանքային նոր հաջողություններով են դիմավորում Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները: Ահա թվեր և փաստեր այդ մասին:

✪ Երևանի արդյունաբերական ձեռնարկությունները այս տարվա 6 ամսվա համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարել են 103 տոկոսով և պլանից դուրս երկրին տվել են 51 միլիոն ռուբլու արտադրանք: Անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, Երևանի ձեռնարկություններում արտադրանքի թողարկումն ավելացել է 12,4 տոկոսով: Զգալի չափով իջել է թողարկվող արտադրանքի ինքնարժեքը: Անցած հինգ ամսվա ընթացքում տնտեսվել է 7 միլիոն ռուբլու հումք, օժանդակ նյութեր, վառելիք և էլեկտրաէներգիա:



✪ Երևանում կապիտալ շինարարությունների ընթացիկ տարվա 6 ամսվա պլանը ավելացել է 17 տոկոսով, իսկ բնակարանային շինարարությանը՝ մոտ 20 տոկոսով: Վեց ամսում շահագործման է հանձնվել 16.700 քառակուսի մետր բնակելի տարածություն, որը 6 տոկոսով ավելի է անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ:

✪ Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ստանձնած պարտավորությունները պատվով են կատարում Երևանի Ստալինյան շրջանի ձեռնարկությունների կոլեկտիվները: Այս տարվա առաջին կիսամյակի պլանը շրջանը կատարել է 102,7 տոկոսով, արտադրանքի թողարկումն անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 13 տոկոսով, իսկ ինքնարժեքն իջել է մոտ 10 տոկոսով: Կես տարում համախառն արտադրանքն ավելացել է 29 միլիոն 642 հազար ռուբլով:

✪ Մեծ Հոկտեմբերը նոր հաջողություններով են դիմավորում Սպանդարյան շրջանի բանվոր-ծառայողները: Շրջանը առաջին կիսամյակի պլանը կատարել է 106,8 տոկոսով և պլանից դուրս երկրին տվել է 13 միլիոն ռուբլու արտադրանք: Միաժամանակ տնտես-

վել է մեծ քանակությամբ հումք և էլեկտրաէներգիա։

✪ Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը աչքի ընկնող հաջողությունների է հասել Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ստանձնած պարտավորությունների կատարման գործում։ Այս տարվա 6 ամսվա արտադրական պլանը կատարել է 101,6 տոկոսով։ Գործարանը միայն 4 ամսում ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորումից տնտեսել է 900 հազար ռուբլի։

✪ Սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները պատվով են կատարում Երևանի Ավտոդողերի գործարանի աշխատողները։ Գործարանը արտադրանքի թողարկման վեց ամսվա պլանը կատարել է 103,8 տոկոսով, տնտեսելով 191 հազար ռուբլու հումք և օժանդակ նյութեղեն։ Այս տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, գործարանը երկրին ավել է տվել 68.756 հատ ավտոդող։

✪ Պահածոների գործարանը ընթացիկ տարվա վեց ամսվա արտադրական պլանը կատարել է 112,7 տոկոսով։ Անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ



աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 33 տոկոսով։ Գործարանը անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի 4 միլիոն 200 հազար տուփ պահածո ավել կթողարկի։

✪ Ստանձնած պարտավորությունները հաջողությամբ է կատարում ճշգրիտ գործիքների գործարանի կոլեկտիվը։ Այս տարվա առաջին կիսամյակում արտադրանքի թողարկումն, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 73,6 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 24,8 տոկոսով։

✪ Արտադրական բարձր ցուցանիշների է հասել էլեկտրատեխնիկական գործարանի կոլեկտիվը, որը կես տարում պլանից դուրս երկրին տվել է 62 հատ (100 կիլովատ կարողությամբ) գեներատոր և շատ էլեկտրաշարժիչներ։

✪ Ժամացույցի գործարանի կոլեկտիվը ջանք չի խնայում մրցությունից հաղթանակով դուրս գալու համար։ Անցած վեց ամսվա պլանը գործարանը կատարել է 101,9 տոկոսով։ Անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ գործարանում արտադրանքի թողարկումն ավելացել է 24,8 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքն իջել է՝

8,9 տոկոսով։ Արտադրության մեջ ներդրվել են բազմաթիվ նորարարական առաջարկություններ, որոնք տարեկան մոտ կես միլիոն օգուտ կբերեն գործարանին։

✪ Կատարելով ստանձնած պարտավորությունները Ջեյ-սճառ կոմբինատի կոլեկտիվը արտադրական բարձր ցուցանիշներով փակեց առաջին կիսամյակը։ Անցած վեց ամսում կոմբինատը տվեց մեկ միլիոն 645 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։ Նույն ժամանակաշրջանում կատարվեց 438 հազար ռուբլու տնտեսում։

✪ Երկրորդ կոշիկի գործարանը առաջին կիսամյա պլանը կատարել է 113,9 տոկոսով։ Տնտեսված հումքի հաշվին արտադրվել է 34.200 զույգ կոշիկ։

✪ Միայն վերը հիշված ձեռնարկությունները չեն, որ արժանավայել գործերով են նշանավորում Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը, նրանց թիվը օրեցօր ավելանում է։ Երևանի տասնյակ ձեռնարկություններ աշխատանքային նոր հաջողություններով են դիմավորում Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՍԵՊՏԵՄԲԵՐ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԸ

Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, *Երկեր, հատոր 27, էջ 306—310, Հայպետհրատ, 1951։*

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի տոնակատարության նախապատրաստման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 17-ի համարում։*

Բարձրորակ արտադրանքի թողարկումը յուրաքանչյուր բանվորի պատվի գործն է, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 31-ի առաջնորդողը։*

## 2. ՀԱՑԸ ՄԵՐ ԵՐԿՐԻ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆ Է, ՄԻՆՉԵՎ ՎԵՐՋԻՆ ՀԱՍԿԸ ՀԱՎԱՔԵՆՔ ԴԱՇՏԵՐԻՑ

Գրականություն

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ* Հացահատիկային տնտեսությունը գյուղատնտեսության ամբողջ արտադրության հիմքն է,

ՍՄԿԿ 20-րդ համագումարին տված զեկուցումից, էջ 81—88, Հայպետհրատ, 1956։

Բերքը հավաքել ժամանակին և առանց կորուստ. «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 24-ի առաջնորդողը։

Գ. ԱՋԱՐՅԱՆ Անկորուստ հավաքենք հացահատիկի բերքը, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1957 թվականի 15-րդ համարում։

3. ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐՈՒՄ ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ

Գրականություն

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարի բանաձևը՝ ՍՄԿԿ կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման վերաբերյալ, էջ 62—67, Հայպետհրատ, 1956։

Լիովին կատարել ստանձնած պարտավորությունները, «Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի 7-ի առաջնորդողը։

1957 թվականի հացահատիկի անշատ բերքահավաքի կազմակերպական-տեխնիկական միջոցառումները, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1957 թվականի 6-րդ համարում։

4. ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ Գյուղատնտեսության մեքենայա-



ցումը, ՍՄԿԿ 20-րդ համագումարին տված զեկուցումից, էջ 94—97, Հայպետհրատ, 1956։

Գյուղական կոմունիստների առաջնահերթ խնդիրները, «Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի 14-ի առաջնորդողը։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետին առընթեր Կենտրոնական վիճակագրական վարչության ճաղորդագրությունը, մաս 3-րդ, Գյուղատնտեսություն, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 23-ի համարում։

5. ԱՎԵԼԻ ՇԱՏ ԿԱԹ, ՄԻՍ, ՅՈՒՂ ՄԵՐ ԵՐԿՐԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻՆ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ Ճառ ՌՍՖՍՌ Հյուսիս-Արևմուտքի մարզերի և ավտոնոմ ռեսպուբլիկաների գյուղատնտեսության աշխատողների խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 25-ի համարում։

Ռեսպուբլիկայի անասնապահների մարտական խնդիրը, «Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի 8-ի առաջնորդողը։

Անասնաբուծություն, նյութեր կոլտնտեսություններում անասունների մթերատվությունը բարձրացնելու վերաբերյալ, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի 6-րդ համարում։

## 6. ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ

Գրականություն

ՍՍՌՄ-ում բնակարանային շինարարությունը զարգացնելու մասին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի 2-ի համարում։*

Համաժողովրդական կարևորագույն խնդիր, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի 3-ի առաջնորդողը։*

## 7. ՆՈՐ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԻՆ

Գրականություն

Բազմակողմանիորեն նախապատրաստվել նոր ուսումնական տարվան, *1957 թվականի հուլիսի 12-ի «Ս. Հ.»-ի առաջնորդողը։*

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության 1957 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին, *6-րդ մաս, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 23-ի համարում։*

## 8. ՈՒԺԵՂԱՑՆԵՆՔ ՊԱՅՔԱՐԸ ՀԱԿԱՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ, ՊԱՐԱԶԻՏԱՅԻՆ ՏԱՐՐԵՐԻ ԴԵՄ

Գրականություն

Հակահասարակական պարազիտային տարրերի դեմ պայքարն ուժեղացնելու մասին օրենքի նախագիծ,



*տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 30-ի համարում։*

Ընդդեմ հակահասարակական, պարազիտային տարրերի, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի 6-ի առաջնորդողը։*

Ռեսպուբլիկայի աշխատավորները քննարկում են հակահասարակական տարրերի դեմ պայքարն ուժեղացնելու օրենքի նախագիծը, *տպագրված «Ս. Հ.»-ի օգոստոսի համարներում։*

## 9. ԱՃՈՒՄ ԵՎ ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԵՎ ԳԵՐՄԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ

Գրականություն

Սովետական պարտիական-կառավարական պատվիրակությունը Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում, *ինֆորմացիոն նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի համարներում։*

Համատեղ հայտարարություն, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Պարտիական-Կառավարական պատվիրակության և Գերմանական Սոցիալիստական միասնական պարտիայի ու Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարության պատվիրակությունների բանակցությունների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի 15-ի համարում։*

---

## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

*ՏԻԵԶԵՐՔՈՒՄ Ո՞ՐՆ Է ԱՄԵՆԱՄԵԾ ՄԱՐՄԻՆԸ.— Երկար ժամանակ մարդիկ կարծում էին, որ երկրագունդը ամենամեծ մարմինն է տիեզերքում։ Այնինչ, երկրագունդը շատ չնչին մեծություն ունի Կառավար համաստեղության Էպսիլոն աստղի նկատմամբ։ Օրինակ, Արեգակի շուրջը պտտվող Յուպիտեր մոլորակի մեջ կտեղավորվի 1.300 երկրագունդ, իսկ Արեգակի ծավալը Յուպիտերի ծավալից 1.000 անգամ մեծ է։ Այդ նշանակում է, որ Արեգակի ծավալը Երկրագնդի ծավալին գերազանցում է մեկ միլիոն երեք հարյուր հազար անգամ։ Սակայն Արեգակը համարվում է թզուկ աստղ, որովհետև Էպսիլոն աստղի մեջ կտեղավորվի 20 միլիարդ Արեգակ։ Եթե երկրագնդի շուրջը ինքնաթիռը կարող է պտտվել մեկ կամ երկու օր, ապա Էպսիլոն աստղի շուրջը պտտվելու համար հարկավոր է մի քանի հազար տարի տևողությամբ ինքնաթիռի անվայրէջք թռիչք։ Այսպիսով տիեզերքում ամենամեծ մարմինը համարվում է Էպսիլոն գերհսկա աստղը։*

*ԱՄԵՆԱՓՈՔՐ ՄԱՍՆԻԿԸ.— Սովորական աչքով անտեսանելի մոլեկուլները բաժանվում են մասնիկների՝*



*ատոմների։ Շատ երկար տարիներ մարդիկ կարծում էին, թե ատոմի ուսումնասիրմամբ գիտությունը հասել է ամենափոքր մասնիկի սահմանին։ Ատոմի հետագա ուսումնասիրությունը ցույց տվեց, որ նա նույնպես բաժանվում է մասնիկների՝ էլեկտրոնների։ Վերջինս ատոմից հարյուր հազար անգամ փոքր է։ Եթե ատոմը մեծացնենք հազար միլիարդ անգամ, ապա նրա կորիզը կլինի գնդասեղի մեծության չափ։ Ատոմի կորիզը նույնպես բաժանվում է մասնիկների՝ պրոտոնների և նեյտրոնների։ Սրանք ամենափոքր մասնիկներն են համարվում։ Սակայն չի կարելի ասել, թե այդ մասնիկները բնության մեջ ամենափոքրն են։ Գիտությունը ցույց է տալիս, որ ամենափոքր մասնիկի համար ստորին սահման գոյություն չունի։*

*ԱՄԵՆԱՏԱՐԻՔԱՎՈՐԸ.— Սագը ապրում է 80—100 տարի, թութակը և արծիվը՝ 100 տարի, փիղը՝ 100—150 տարի, կրիան՝ 175 տարի, գայլաձուկը՝ 260—270 տարի, սոճին և կաղնին՝ 1000 տարի, նոճին (կիպարիս) մոտ 2000 տարի, իսկ սեկվոյա ծառը՝ մինչև 6000 տարի։*

*ԱՄԵՆԱՄԵԾ ԱՐԱԳՈՒԹՅՈՒՆԸ.— Ամենամեծ արագությունը, դա լույսի և ռադիոալիքների տարածման արագությունն է՝ շուրջ 300.000 կիլոմետր վայրկյանում։ Ենթադրենք, լույսի ճառագայթը, թնդանոթի արկը, ռեակտիվ ինքնաթիռը, գնացքը և մարդը միաժամանակ դուրս են գալիս Երկրագնդից և առանց*





կանգառումների ուղևորվում են դեպի Արեգակը։ 149,5 միլիոն կիլոմետր տարածություն կտրելով լույսը կհասնի 8 րոպե 18 վայրկյանում, թնդանոթի արկը՝ 8 տարում, ինքնաթիռը՝ 20 տարում, գնացքը՝ 180 տարում, իսկ ոտքով ճանապարհորդը՝ 3400 տարում միայն։

ԱՄԵՆԱՑԱԾՐ ՋԵՐՄԱՍՏԻՃԱՆԸ.— Երկրագնդի վրա՝ բնական պայմաններում ամենացածր ջերմաստիճանը լինում է այսպես կոչված «ցրտի բևեռում» Օյմյակոնում, ուր ջերմաստիճանը երբեմն իջնում է մինչև 70 աստիճան։ Ենթադրվում է, որ մթնոլորտի համեմատաբար բարձր շերտերում այն կարող է ավելի ցածր լինել։

Հեղուկ օդ պարունակող սառցարանի ջերմաստիճանը հասնում է 194 աստիճանի, իսկ հեղուկ հելիում պարունակող սառցարանինը՝ 269 աստիճանի։ Այսպիսով ամենացածր ջերմաստիճանը գտնվում է լաբորատորիաներում։

ԱՄԵՆԱԲԱՐՁՐ ՋԵՐՄԱՍՏԻՃԱՆԸ.— Ամենաբարձր ջերմաստիճանը լինում է Հյուսիսային Աֆրիկայում, ուր երբեմն հասնում է + 60 աստիճանի։ Հրաբխային պրոցեսների ժամանակ լավայի ջերմաստիճանը հասնում է շուրջ 1000-ի։

Բարձր ջերմաստիճաններ ստացվում են ոչ թե բնական, այլ արհեստական եղանակով։ Օրինակ, էլեկտրական զոդումների ժամանակ վոլտյան աղեղի ջերմաս-



տիճանը հասնում է 3500-ի։ Եթե այդ նույն աղեղը տեղավորենք մեծ ճնշման տակ գտնվող գազում, ապա նրա ջերմաստիճանը հասնում է մինչև 6000 աստիճանի։

Երկրագնդի վրա ամենաբարձր ջերմաստիճանը ստացվում է ատոմային ռումբի պայթման ժամանակ, այն հասնում է մի քանի միլիոնի։

---

## СОДЕРЖАНИЕ



Իտ. խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

